ЕРЕВАНСКИЙ ГОСУДАРСТВЕННЫЙ УНИВЕРСИТЕТ
ЦЕНТР АРМЕНОВЕДЧЕСКИХ ИССЛЕДОВАНИЙ

# ВИДНЫЕ ДЕЯТЕЛИ АРМЯНСКОЙ КУЛЬТУРЫ

## V–XVIII ВЕКА



ИЗДАТЕЛЬСТВО ЕРЕВАНСКОГО УНИВЕРСИТЕТА
ЕРЕВАН — 1976

ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ
ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆ

# ՀԱՅ ՄՇԱԿՈՒՅԹԻ ՆՇԱՆԱՎՈՐ ԳՈՐԾԻՉՆԵՐԸ

## V–XVIII ԴԱՐԵՐ



ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ — 1976

*Խմբագրությամբ* էդ. Բ. Աղայանի,
էմ. Ս. Պիվազյանի, Հ. Գ. Ժամկոչյանի

60000—11 / 704(02)—76 10—75



# ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

Ներկա հատորում ամփոփված են V—XVIII դարերի հայ մշակույթի ականավոր ներկայացուցիչների դիմանկարները առանձին հոդվածներով: Միջնադարյան Հայաստանի մշակույթի առավել զարգացած ճյուղերը՝ պատմագրությունը, գեղարվեստական գրականությունը, մանրանկարչությունը, ճարտարապետությունը, փիլիսոփայությունը, ինչպես նաև բնական գիտությունները ներկայացնող դեմքերը, հասկանալի է, որ տարբեր դասակարգերի գաղափարախոսներ են: Ըստ իրենց դասակարգային պատկանելության նշված գործիչներին կարելի է բաժանել երեք խմբի. եթե, օրինակ, Մովսես Խորենացին, Եղիշեն, Ներսես Շնորհալին, Ստեփանոս Օրբելյանը ավատական տիրող դասակարգի առաջադեմ ներկայացուցիչներն են, իսկ Ֆրիկը, Սայաթ-Նովան՝ աշխատավորական տրամադրությունների արտահայտիչներ, ապա Շահամիր Շահամիրյանը, Հովսեփ Էմինը XVIII դ. ձևավորվող բուրժուազիայի առաջին գաղափարախոսներն են. ընդ որում նրանք բոլորն էլ խոշոր դեր են խաղացել հայ ժողովրդի մշակութային և քաղաքական պատմության մեջ:

Ժողովածուի մեջ չեն ընդգրկված մի քանի նշանավոր դեմքեր (Կոմիտաս Աղձեցի, Ներսես Շինող, Վանական Վարդապետ և ուրիշներ), որոնց ստեղծագործությունը մեզ չի հասել կամ նրանց մասին պահպանված տեղեկությունները սակավ են ու կցկտուր:

Ժողովածուի հոդվածները, որոնց հեղինակները մասնագետ հետազոտողներ են, գրված են հանրամատչելի ձևով. նկատի է առնված հայ մշակույթի պատմությամբ հետաքրքրվող ընթերցողների լայն շրջանները:

Յուրաքանչյուր հոդվածի վերջում տրված է տվյալ գործչի ստեղծագործությունների ամենակարևոր հրատարակությունների և նրա մասին կարևորագույն ուսումնասիրությունների մատենագիտական ցանկ։

Մի շարք հոդվածների՝ երաժշտությանը վերաբերող հատվածները գրել է արվեստաբանության թեկնածու Ն. Թահմիզյանը։

# ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ

*Մեսրոպ Մաշտոցը՝ հայ գրերի ստեղծողը և մատենագրության հիմնադիրը, առաջին թարգմանիչը, առաջին ուսուցիչն ու հայալեզու դպրոցի հիմնադիրը, ծնվել է պատմական Հայաստանի Տարոն գավառի Հացեկաց գյուղում կիսաղատ (կարճազատ) գյուղացու ընտանիքում։ Մաշտոցի ծննդյան տարին ընդունված է համարել 362 թ.։ Վախճանվել է 440 թ. փետրվարի 17-ին։ Մեսրոպի ծնողների մասին գիտենք միայն այնքանը, որ հոր անունը Վարդան է։ Մեսրոպի աշակերտ և կենսագիր Կորյունի, ինչպես և մեր մյուս պատմիչների (Փարպեցի, Խորենացի և այլք) վկայության համաձայն, Մեսրոպը իր ժամանակի համար լավ կրթություն է ստացել հայրենի գավառում՝ Տարոնում, որից հետո գնացել է Վաղարշապատ մայրաքաղաքը և պաշտոնավարել Խոսրով Գ-ի արքունիքում՝ որպես ատենադպիր և զինվորական։ Նա իմացել է հունարեն, ասորերեն և պարսկերեն լեզուներ, որոնցով հայկական արքունիքում վարում էին գրագրությունները։ Թե քանի տարի է Մեսրոպը պաշտոնավարել արքունիքում՝ ստուգապես հայտնի չէ, բայց հայտնի է, որ նրան արքունիքում սիրել ու համակրել են, ըստ որում Կորյունը գրում է, թե նա «իր զինվորական արվեստով սիրելի էր դարձել իր զորականներին»։*

*Չնայած պաշտոնի մեջ ունեցած առաջադիմությանը, Մեսրոպը թողնում է զինվորական ծառայությունը, ընդունում է հոգևոր կոչում և իրեն նվիրում ճգնավորության, իր կյանքն անցկացնում մենակեցության մեջ, մարդկանցից հեռու, քարանձավներում։ Այս ճգնակեցության ժամանակ նա իրեն ընկերակից է դարձնում նաև ուրիշների, որոնք, ամենայն հավանականությամբ, իր հետևորդները կամ աշակերտները դարձան։ Այնուհետև, առնելով իր աշակերտներին, նա մեկնում է Գողթան գավառի կողմերը, որտեղ*

դեռևս ամուր պահպանվում էին հեթանոսական կրոնն ու սովորույթները։ Նրան ընդառաջ է գալիս տեղի իշխան Շաբիթը, հյուրընկալում սիրով և հնարավորություն տալիս ծավալելու քարոզչական գործունեություն։

Կորյունի վկայությամբ, նա դարձի, այսինքն՝ քրիստոնեական դավանանքի է բերում Գողթն գավառի ժողովրդին։

Այս հաջողությունը, սակայն, բավարարություն չի տալիս Մեսրոպին։ Նա մտահոգված էր ամբողջ հայ ժողովրդի ճակատագրով։ Բանն այն է, որ հայ ժողովրդի վիճակը Մեսրոպի գործունեության տարիներին չափազանց ծանր էր և հղի էր շատ ավելի լուրջ հետևանքներով։ Բաժանված լինելով երկու մեծ տերությունների՝ հռոմեական և պարսկական պետությունների միջև, հայ ժողովուրդը փաստորեն կորցրել էր ոչ միայն իր միասնականությունն ու անկախությունը, այլև ընկել էր քաղաքական և մշակութային տարբեր ազդեցությունների տակ։ Հռոմեական գերիշխանության տակ գըտնըվող մասը վեր էր ածվել բյուզանդական կայսրության մի կուսակալության, որ կառավարվում էր կայսեր կողմից նշանակված «կուսակալի» կամ «զորավարի» կողմից։ Արևելյան մասը, որ ենթակա էր Պարսկաստանին, թեև անվանապես դեռևս պահպանում էր իր թագավորությունը, բայց կախման մեջ էր պարսկական արքայից արքայի իշխանությունից։ Երկրի երկատվածությունը մի կողմից, սեփական գրի ու գրականության բացակայությունը մյուս կողմից, սպառնում էին հայ ժողովրդին հետագա ավելի աղետալից ճակատագիր։ Երկրում, իբրև պետական և ուսումնական ու կրոնական-պաշտամունքային լեզու տիրապետում էին հունարենն ու ասորերենը։ Այս վիճակը հայ ժողովրդին զրկում էր քրիստոնեական կրոնը մայրենի լեզվով ընկալելու և այն հասկանալու հնարավորությունից, և զարմանալի չէ, որ քրիստոնեությունն իբրև պաշտոնական կրոն Հայաստանում ընդունելուց հարյուր տարի հետո էլ ժողովրդի զգալի մասը դեռևս անհաղորդ էր նրան։ Ժողովուրդը պետք է մաքառեր իր քաղաքական, տնտեսական ու մշակութային միասնության ու անկախության, նույնիսկ իր ֆիզիկական գոյության համար։ Ձուլման վտանգը սպառնում էր երկու հատվածներում էլ, ըստ որում արևելյան մասում թեև պարսկական գերիշխանությունը դեռևս հանդուրժում էր քրիստոնեական կրոնը, բայց, ինչպես պատմությունը ցույց տվեց, այդ հանդուրժողականությունը երկար չէր կարող տևել։ Պարսից թագավորները ձգտում էին վերացնել քրիստոնեական կրոնը և հայերին պարտադրել զրադաշտական կրոնը, որը, ինչպես հայտնի է, հանգեցրեց Վարդանանց պատերազմին, ըստ որում այդ բռնի կրոնադարձությունն, ըստ էության, նշանակում էր հայերի ձուլումը պարսիկներին։ Այս պայմաններում զարմանալի չէր Մեսրոպի մտահոգությունը։ Նա արևելյան մասի մի հատվածում՝ Գողթնում, քարոզչական գործունեության փորձից համոզվեց, որ գոյություն ունեցող պայմաններում ժողովրդական զանգվածները չէին կարող քրիստոնեական կրոնը հարկեղած չափով ընկալել, քանի որ այն, ինչպես ասացինք, քարոզվում էր հունարեն կամ ասորերեն լեզուներով, որոնք մատչելի չէին ունկնդիրներին։ Եվ որովհետև տվյալ պայմաններում հայ ժողովրդի մեջ քրիստոնեության տարածումն ու արմատավորումը լոկ կրոնական խնդիր չէր, այլև քաղաքական, քանի որ նպատակ ուներ պատվար ստեղծել ձուլման վտանգը կանխելու համար, ապա բնականաբար Մեսրոպը շատ ավելի մեծ ընդգրկումով էր ցանկանում լուծել հայ ժողովրդին քրիստոնեական կրոնին հաղորդակից դարձնելու խնդիրը, քան այն, ինչի ինքը հասել էր իր քարոզչական գործունեությամբ։ Այս ամենը համառոտ, բայց շատ պարզորոշ նկարագրում է Կորյունը. «Եվ երբ նրանց մեջ սերմանեց կյանքի խոսքը, հայտնապես մեծամեծ հրաշքներ երևացին գավառի բնակիչներին... նա մտքում դրեց ավելի հոգալ նույնպես համայն աշխարհի (այսինքն՝ Հայաստանի) ժողովրդին մխիթարելու մասին, (ուստի) և ավելացրեց մշտամռունչ աղոթքն ու բազկատարած պաղատանքն առ աստված և անդադար արտասուքը, մտաբերելով առաքյալի խոսքը. և ասում էր հոգալով. «Տրտմություն է ինձ համար, և անպակաս են իմ սրտի ցավերն իմ եղբայրների և ազգակիցների համար»։



Եվ այնպես տրտմական հոգսերով պաշարված ու թակարդապատված և մտածմունքների ծփանքի մեջ էր ընկած, թե արդյոք ի՞նչպիսի ելք գտնի այդ բանի համար»[1]։ Այս մտածմունքների ու հոգսերի մեջ էլ, ահա, ինչպես վկայում են Խորենացին և Փարպեցին, Մեսրոպը հղանում է հայկական գրեր ստեղծելու գաղափարը։

Իր մտադրությունն իրականացնելու նպատակով Մեսրոպը վերադառնում է Վաղարշապատ և դիմում Սահակ կաթողիկոսին։ Պարզվում է, որ Սահակն էլ նույն մտատանջությունների մեջ է,

[1] Կորյուն, Վարք Մաշտոցի, բնագիրը, ձեռագրական այլընթերցվածներով, թարգմանությամբ, առաջաբանով ու ծանոթագրություններով ի ձեռն պրոֆ. դ-ր Մանուկ Աբեղյանի, Երևան, 1941, էջ 41։

ուստի և միանգամայն պատրաստակամորեն ընդունում է Մեսրոպի առաջարկը։ Երկուսով հայ գրերի ստեղծման մտքով ոգևորված, գումարում են ընդհանրական ժողով, որը հավանություն է տալիս այդ ոգևորիչ ծրագրին։ Գրի և գրականության ստեղծմամբ հայ եկեղեցին, հայ հոգևորականները ձգտում էին նաև հոգևոր ու մշակութային մարզերում ազատվել հունական և ասորական եկեղեցիների ազդեցություններից։ Մեսրոպը և Սահակը սկսում են իրենց որոնումները՝ հայերեն նշանագրեր ստեղծելու համար։ Նրանք իրենց մտադրության մասին պատմում են Վռամշապուհ արքային, որը նույնպես հավանություն է տալիս նրանց մտադրությանը։ Այս հանգամանքը խոսում է ժամանակի քաղաքական ու մշակութային վիճակից բխող անհրաժեշտության, հայ ժողովրդի ձուլման վտանգին դիմակայելու հոգևոր և աշխարհիկ իշխանությունների միասնական ձգտման մասին։ Քաջալերելով այդ նախաձեռնությունը, թագավորը միաժամանակ հայտնում է, որ Դանիել անունով ասորի մի եպիսկոպոս «հանկարծ գտել է» հայերենի այբուբենը՝ նշանագրերը։ Վահրիճ անունով մեկին ուղարկում են Դանիել եպիսկոպոսի մերձավորներից Հաբելի մոտ։ Հաբելը, Վահրիճից լսելով Վռամշապուհի հանձնարարության մասին, շտապում է Դանիելի մոտ, նրանից ստանում նշանագրերը և ուղարկում «արքային՝ հայոց երկիրը», Վռամշապուհի թագավորության հինգերորդ տարում։ Բոլորն ուրախանում են այդ հանկարծական գյուտով, հավաքում են երիտասարդների, ու Մեսրոպը սկսում է այդ նշանագրերը սովորեցնել նրանց։ Շուտով, սակայն, պարզվում է, որ այդ գրերը, որոնք հայագիտության մեջ «դանիելյան նշանագրեր» անունն են ստացել, հայկական չեն և չեն բավարարում հայոց լեզվի պահանջներին. հայերենի հարուստ հնչյունական համակարգի համար այն անկատար, թերի այբուբեն էր։ Ուստի հրաժարվելով դրանից՝ նույն տարում էլ նրանք շարունակում են որոնումները։

Վերցնելով մի խումբ երիտասարդների, Մեսրոպը դիմեց դեպի այն ժամանակվա ուսումնական ու գիտական մեծագույն կենտրոններից մեկը՝ Եդեսիա։ Հետը տարած աշակերտների մի մասին պահելով իր մոտ, մյուս մասին ուղարկեց Սամոսատ՝ հունական կրթություն ստանալու համար։ Նա գիտակ մարդկանց օգնությամբ որոնումներ կատարեց Եդեսիայի հռչակավոր դիվանատանը, որտեղ պահվում էր հսկայական գրականություն։ Այստեղ զանազան գրքեր կարդալով նա ուսումնասիրեց տարբեր լեզուների այբուբենները, ծանոթացավ դրանց կառուցվածքին, տառերի ձևե-



րին, գրության սկզբունքներին, որոնց իմացումն անհրաժեշտ էր հայկական գրեր ստեղծելու համար։ Եվ այս բոլորից հետո ձեռնամուխ եղավ հայոց գրերի ստեղծմանը։ Ծանոթ լինելով արդեն բազմաթիվ այբուբենների, Մեսրոպը կազմեց հայերենի այբուբենը՝ ստեղծելով միանգամայն յուրահատուկ տառեր՝ հետևելով գրության լավագույն սկզբունքներին։

Նրա ստեղծած հայկական այբուբենի հիմնական սկզբունքները հետևյալներն են. 1) մեկ տառին մեկ հնչյուն, մեկ հնչյունին՝ մեկ տառ. բացառություն է կազմում միայն ու տառը, որ բաղկացած է երկու տառանիշերի միացումից և այբուբենի մեջ չի մտնում. այս կետում Մեսրոպը ուղղակի հետևել է հունական այբուբենին, որ նույնպես չուներ ու տառը (գրվում էր օ և υ տառերով). 2) աջընթաց հորիզոնական գրություն. իր ժամանակի այբուբեններից շատերը ունեին ձախընթաց գրություն, նա ընտրեց աջընթաց գրությունը, որի առավելությունն ակներև է. 3) տարորոշիչ (դիակրիտիկ) նշանների բացակայություն. իր ժամանակի այբուբեններից շատերը, այդ թվում և հունարենը, օգտագործում էին տառերի տակ, վրան կամ կողքին դրվող զանազան նշաններ՝ տառերի արտասանությունը ճշտելու, ձայնավորները որոշելու և նման հանգամանքներ հայտնի դարձնելու համար. Մեսրոպը խուսափեց այդ կարգի նշաններով այբուբենը խճողելուց, և դա նրա ստեղծած այբուբենի առավելություններից մեկն է. 4) ինչպես ամեն մի կենդանի լեզվի, այնպես էլ V դարի հայերենի համար, անշուշտ, բնորոշ էր հնչյունների զանազան արտասանություն տարբեր վայրերում, եթե դրանք դեռևս բարբառային մեծ տարբերություններ չէին էլ առաջացնում, այնուամենայնիվ, այս կամ այն չափով խախտում էին միասնական արտասանությունը. Մեսրոպը կարողացավ այդ տարբերություններից վերանալ և ստեղծել միասնական հընչյունական համակարգը ներկայացնող՝ այսպես կոչված **ճնչույթային գիր:**

Այս հիմնական սկզբունքները հնարավորություն տվեցին ստեղծելու հայերենի համար լիակատար այբուբեն, որը ոչ միայն լիովին բավարարում էր ժամանակի հայերենին, այլև ստեղծումից հետո անցած հազար հինգ հարյուր տարվա ընթացքում որևէ էական փոփոխության ենթարկվելու կարիքը չունեցավ. եղած փոփոխությունները վերաբերում են հայերենի մեջ ժամանակի ընթացքում ավելացած հնչյուններն արտահայտելու համար հավելյալ գրե-

րին (օ, ֆ), որոնք միջին դարերում մտել են հայկական այբուբենի մեջ և ավելացվել վերջում։

Պատմելով Մեսրոպի՝ Եդեսիայում կատարած աշխատանքի մասին, Կորյունը գրում է. «Եվ նա իր ընկերների հետ սկսեց սովորական աղոթքներն ու տքնությունները և արտասվալից պաղատանքները, խստամբերությունները, աշխարհահեծ հոգսերը... Եվ այսպես նա շատ նեղություններ քաշեց իր ազգին մի բարի օգնություն գտնելու համար։ Ամեն բան շնորհող աստծուց խնկապես պարգևվեց նրան (այդ) բախտը. նա իր սուրբ աջով հայրաբար ծնեց նոր և սքանչելի ծնունդներ— հայերեն լեզվի նշանագրեր։ Եվ այնտեղ շուտով նշանակեց, անվանեց ու դասավորեց, հորինեց սիղոբաններով-կապերով» (49)։ Այս մեջբերումը ցույց է տալիս, որ Մեսրոպն, իրոք, տանջալից աշխատանք է կատարել, երկար ժամանակ ուսումնասիրելով զանազան այբուբեններ, և, վերջապես, ինքն ստեղծել, այսինքն՝ հորինել, դասավորել ու անվանել է հայերեն տառերը։ Այստեղ կարևոր է նշել, որ հայերեն այբուբենը շատ ավելի հարուստ է, քան Մաշտոցի օգտագործած, ուսումնասիրած այբուբեններից շատերը (օրինակ՝ հունարենը, ասորերենը և այլն), նրանց մեծագույն մասը չուներ հայերենին հատուկ մի շարք հնչյունների տառերը (չ, ճ, ց, ջ, ձ, ծ, երկու լ՝ լ և ղ, երկու ր՝ ր և ռ և այլն)։

Մեսրոպն օգտագործած այբուբենների տառերից ոչ մեկն էլ անփոփոխ կերպով չի մուծել հայկական այբուբենի մեջ (հայերեն տառերը չեն նույնանում այլ այբուբենների տառերին), այլ ստեղծել է ինքնատիպ նշանագրեր։ Տառերի դասավորությունը այբուբենի մեջ հիմնականում համընկնում է հունականին։ Այբուբենի ստեղծումով Մեսրոպն ավարտեց իր գործը Եդեսիայում և գնաց Սամոսատ քաղաքը։ Այստեղ նա գտավ հունական դպրության հմուտ մի գրագիր («գրիչ ոմն հելլենական դպրութեան»). Հռոփանոս անունով, որին և հանձնարարեց իր ստեղծած տառերը ձևավորել գեղագրորեն։ Այստեղ էլ թարգմանել է «Առակաց գրքից» մեկ նախադասություն՝ «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ» [«Ճանաչել իմաստություն և խրատ, իմանալ հանճարի խոսքերը»], և գրել տվել Հռոփանոսին, որպեսզի գործնականում երևա իր հորինած տառերի կիրառելիությունը ոչ միայն հայերենի հնչյունական համակարգի համապատասխանության տեսակետից, այլև գեղագրական տեսանկյունից։ Հավանական է, որ հենց միայն այդ նախադասությունը կամ մի փոքրիկ հատված է



թարգմանել Մեսրոպը, և գրել տալով գեղեցիկ գրչությամբ, ավարտված է համարել իր գործը Սամոսատում։

Կա՞ր արդյոք պատճառ մեկ կամ մի քանի նախադասություն միայն թարգմանելու, գրել տալու և այդ մի քանի նախադասությունը գեղեցիկ գրված առնելու ու վերադառնալու Հայաստան։ Այո, կար։ Իր հայրենիքում առաջին փորձը ձախողվեց, դանիելյան գրերը չբավարարեցին հայերենի պահանջներին, և Մեսրոպն ստիպված եղավ մեկնել այլ վայրեր՝ հայերեն տառերը հորինելու համար։ Նա այդ գործը կատարել էր արդեն, սակայն միայն տառերի հորինումը բավական չէր. նրան հարկավոր էր նախ պարզել, թե իրո՞ք այդ տառերը բավարարում են հայերենի հնչյուններին. նա համոզվել էր դրանում հենց տառերը հորինել-ավարտելուց հետո, և այդ համոզմունքով անցավ Սամոսատ՝ տառերը գեղագրորեն գրել տալու նպատակով։ Այդ թարգմանությունը և դրա՝ Հռոփանոս գրիչ-գեղագրի ձեռքով գրի առնված հատվածը շոշափելի, նյութական ապացույցն էր այն բանի, որ նա հաջողությամբ էր կատարել իրեն հանձնարարված գործը, և այդ գիտակցությամբ էլ դիմեց դեպի հայրենիք։

Այստեղ նրան դիմավորեցին մեծագույն խանդավառությամբ։ Ինչպես պատմում է Կորյունը, երբ Մեսրոպի և իր աշակերտների գալստյան մասին լուր հասցրին թագավորին ու կաթողիկոսին, վերջիններս «նախարարագունդ ավագանու բոլոր բազմությունն առնելով՝ քաղաքից դուրս եկան, Ռահ գետի ափին դիմավորեցին երանելիին» (55)։ Ցնծության երգերով ու փառաբանություններով դիմավորողները Մեսրոպին առաջնորդեցին դեպի մայրաքաղաք և մեծ տոնախմբություններով նշեցին այդ իրադարձությունը։

Հայկական գրերն ստեղծված էին արդեն, և գործադրությամբ՝ Առակաց գրքի հատվածի թարգմանությամբ, հավաստվել էր դրանց պիտանիությունը։ Այժմ արդեն Մեսրոպը և նրա ընկերակիցները ձեռնամուխ են լինում ուսումնական ու գրական գործունեության։ Մեսրոպը գլխավորեց մի կողմից ուսումնական, մյուս կողմից՝ թարգմանական ու քարոզչական գործը։ Նախ ձեռնարկեցին, ինչպես և պետք էր սպասել, թարգմանել Աստվածաշունչը։ Կորյունը պատմում է, որ սկսեցին թարգմանել ավետարանական արվեստը և գրել (այսինքն՝ արտագրելով բազմացնել) ու սովորեցնել։ Ինքը՝ Մեսրոպը, քարոզչության է անցնում նախ Գողթնում, ապա՝ Սյունիքում։ Արդեն կրթված աշակերտներին ուղարկում են Հայաստանի զանազան կողմերը՝ գրագիտություն սովորեցնելու, քրիստոնեու-

թյունը քարոզելու մայրենի լեզվով։ Իսկ աշակերտներն անպակաս էին. «Նրանք իրենք էլ հենց Հայաստան աշխարհի զանազան կողմերից ու գավառներից բազմությամբ վեր էին կենում, գալիս հասնում էին աստվածային գիտության բացված աղբյուրը» (59)։ Այս եղանակով կարճ ժամանակամիջոցում Հայաստանում ստեղծվեց գրագետ, իր ժամանակի համար կրթված երիտասարդների մի մեծ խումբ, որը և նվիրվեց ինչպես լուսավորության, այնպես էլ կրոնական գործունեության։ Մեսրոպի, Սահակի ու նրանց աշակերտների ծավալած գործունեությունն իսկապես մի լուսավորական շարժում էր, որ ուներ ոչ միայն մշակութային, այլև, առաջին հերթին, ազգային-քաղաքական նշանակություն. միասնական մշակույթի զարգացումով հիմք էր դրվում հայ ժողովրդի բոլոր հատվածների միավորման, հոգեկան կերտվածքի ու մշակույթի միասնականացման, որ անհրաժեշտ էր ոչ միայն հենց այդ դարում, երբ Հայաստանը բաժանված էր երկու օտար պետությունների միջև, այլև ամբողջ հետագա դարաշրջաններում՝ դիմակայելու համար իրար հաջորդող կործանիչ արշավանքներին, բարբարոսական ներխուժումներին ու տիրապետություններին։ Այդ բանը լավ էին հասկանում ոչ միայն Մեսրոպը, Սահակը և իրենց աշակերտները, այլև Վռամշապուհ արքան, աշխարհիկ իշխանությունը։ Եվ իզուր չէ, որ Կորյունը ոգևորությամբ պատմում է, թե ամբողջ Հայաստան աշխարհում սրտալից ուրախություն էր տիրում։

Եթե հայ ժողովրդի հոգևոր ու գաղափարական միասնությունն ամրապնդելուն նվիրված անդուլ գործունեությամբ ու մեծամեծ ջանքերով, այդ նպատակին հասնելու համար հայկական գրի ու գրականության ստեղծման գործում ցուցաբերած հետևողական ու անխոնջ պրպտումներով Մեսրոպ Մաշտոցը հանդես է գալիս որպես իր ժողովրդին նվիրված անձնուրաց քաղաքական-գաղափարական գործիչ, ապա հայկական գրի ստեղծումով նա իրեն դրսևորում է իբրև մեծ գիտնական։ Իր կատարելությամբ հայկական գիրը, իրոք, հանճարեղ մտքի ծնունդ է։ Այդ գործն ավարտելով՝ Մեսրոպը հայ ժողովրդին նվիրեց իր հոգեկան կերտվածքի բյուրեղացման, իր մշակույթի զարգացման հզոր մի զենք։

Սակայն անհանգիստ ու եռանդուն ուսուցիչն ու գիտնականը դեռևս չէր ավարտել իր առաքելությունը։ Քարոզչական գործունեություն ծավալելով Արևելյան Հայաստանի գավառներում, նա հոգ տարավ նաև հարևան ժողովուրդների՝ հայերի հետ անմիջական հարևանության ու բարեկամական, բարիդրացիական հարաբերու-



թյունների մեջ գտնվող վրացիների ու աղվանների համար գիր ստեղծելու մասին։

Այս առաքելությունն էլ հաջողությամբ ավարտելուց հետո, Մեսրոպն իր աշակերտների մի խմբի հետ մեկնում է Արևմտյան Հայաստան՝ այնտեղ ևս դպրոցներ բանալու և գրագիտություն սովորեցնելու համար։ Այստեղ նրան լավ ընդունելություն են ցույց տալիս երկրի մեծամեծներն ու կրոնավորները, մանավանդ՝ կայսրության կառավարիչը՝ սպարապետը։ Բայց, չնայած այդ լավ ընդունելությանը՝ Մեսրոպի մտադրությունն այնքան էլ բարեհաճ վերաբերմունքի չի արժանանում։ Սպարապետ Անատոլիսը հայտնում է կայսրին Մեսրոպի ու իր ընկերակիցների ժամանման և նրանց մտադրության մասին։ Կայսրը հրամանով հանձնարարում է սպարապետին՝ մեծարանքով ընդունել Մեսրոպին և նրան «ակումիտ» (տքնող, անքուն, հսկող) կոչումով մեծարել։ Մեսրոպն ստիպված է լինում գնալ Կոստանդնուպոլիս կայսերանիստ քաղաքը՝ կայսրից հատուկ թույլտվություն ստանալու համար։ Կայսրը լավագույն ընդունելությամբ պատվում է Մեսրոպին, հավանություն է տալիս նրա մտադրությանը և գրավոր հրամաններով («սակերներով») հանձնարարում թույլատրել հայկական դպրոցներ բանալ և կրթել մանուկներին։ Այս գործը ևս մեծ հաջողությամբ է գլուխ բերում Մեսրոպը ընկերակիցների հետ. հիմնադրում է դպրոցներ, այնտեղ իր հետ բերած աշակերտներին ուսուցիչներ է կարգում և զանազան վայրերի դպրոցներում հավաքում բազմաթիվ աշակերտներ։ Միայն իր առաքելությունը ավարտելուց, Հայաստանի բոլոր կողմերում, ինչպես և Աղվանքում ու Վրաստանում լուսավորության գործը հաստատուն հիմքերի վրա դնելուց հետո, նա վերադառնում է մայրաքաղաք, միանում Սահակին և շարունակում գրական-թարգմանչական գործունեությունը։ Այս շրջանում նույնպես նա հաճախ դուրս է գալիս շրջագայությունների, այցելում իր հիմնած դպրոցները, քարոզներ կարդում ժողովրդի համար։ Ինչպես երևում է Կորյունի վկայությունից և ինչպես ցույց են տվել բանասեր-հայագետները, Սահակը և Մեսրոպը թարգմանել են Աստվածաշունչը գրեթե ամբողջությամբ (կասկածի տակ է առնըվում միայն Մակաբայեցվոց գրքի թարգմանությունը)։ Բացի դրանից, հավանական է համարվում նաև այլ եկեղեցական գրքերի թարգմանությունը Սահակի և Մեսրոպի ձեռքով կամ գոնե նրանց անմիջական մասնակցությամբ։ Համենայն դեպս, պարզ է ու կաս-

կածից վեր այն հանգամանքը, որ այս շրջանում Մեսրոպը լծվել էր գրական գործունեության, իբրև հիմնական զբաղմունքի։

Մեսրոպին են վերագրվում նաև ինքնուրույն երկեր, ինչպես՝ Ապաշխարության շարականները, «Յաճախապատում ճառք» ժողովածուն, Պրոկղ եպիսկոպոսին ուղղված թուղթը և այլն։

Մաշտոցը Սահակ Պարթևի հետ դարի գրական բուռն շարժումը ղեկավարեց մինչև իր կյանքի վերջը։ Կորյունի վկայությամբ, Մեսրոպը գրերի գյուտից հետո ապրել է ու գործել 35 տարի, իսկ արքունիքից հեռանալուց և քարոզչական գործունեության նվիրվելուց մինչև մահը՝ 45 տարի։ Նրան թաղեցին Օշական գյուղում, թաղումը եղավ փառահեղ. ամբողջ հոգևորական դասը, մայրաքաղաքի ժողովուրդը, մեծամեծների առաջնորդությամբ, մասնակցեցին թաղմանը։

Ի հավերժացումն Մեսրոպի անվան, Վահան Ամատունին (այն ժամանակվա հայոց հազարապետը) նրա գերեզմանին տաճար կանգնեցրեց (մահվանից երեք տարի հետո), իսկ նրա աշակերտներից մեկը՝ Կորյունը, Հովսեփ կաթողիկոսի հանձնարարությամբ և իր աշակերտակիցների թախանձանքով ձեռնարկեց Մեսրոպի կենսագրությունը շարադրելուն։ Կորյունը գրում է. «Բայց արդ՝ նախ մի առաջաբան անենք, թե թույլատրելի՞ է արդյոք կատարյալ մարդկանց վարքի մասին գրել։ Ոչ թե մեր կողմից, մեր կարծիքով վիճաբանելով կճարտարախոսենք, այլ տրված օրինակներով պարզ կերպով կապացուցենք հակառակը» (25)։ Այս հատվածի մեջ կատարյալ նշանակում է «մահացած, վախճանված», և հատվածի միտքը այն է, թե արդյոք կարելի՞ է «վարք» գրել նրանց մասին, ովքեր ո՛չ նահատակ են, ո՛չ սուրբ, ո՛չ մարգարե կամ առաքյալ։

Կորյունի այս առաջաբան-արդարացումը միանգամայն հասկանալի է։ Իր ժամանակին «վարք» գրում էին նահատակների ու սրբերի մասին, մինչդեռ Մեսրոպը ոչ նահատակ էր, ոչ էլ սուրբ։ Թեև հետագայում Մեսրոպը դասվեց հայ եկեղեցու սրբերի շարքը, բայց մահվանից անմիջապես հետո հավանաբար դեռևս չէր արժանացել այդ պատվին։ Ուստի և Կորյունը հարկ է համարում արդարացնել իր մահով մահացածի մասին «վարք» գրելու իր հանդգնությունը։ Մեսրոպի գործունեության մեջ պատմիչները, ինչպես և հետագայում բանասերներից ոմանք, շեշտել են առանձնապես կրոնական-քարոզչական գործունեությունը։ Որ Կորյունը հաճախ ավելի շատ է խոսում նրա քարոզչական գործունեության մասին, սա միանգամայն հասկանալի է, քանի որ նա գրում էր ոչ թե նահատակի, այլ իր մահով մահացած մարդու մասին, այդ պատճառով էլ արդարանալու համար ավելի շատ շեշտը դնում է նրա կրոնական գործունեության վրա։



Այդ դարաշրջանում քրիստոնեական կրոնի տարածումը, քրիստոնեական գաղափարախոսության ամրացումը հայ ժողովրդի բոլոր խավերի մեջ, ըստ էության, առաջադիմական էր և, մանավանդ, ուներ քաղաքական-ազգային խոշոր նշանակություն։ Կորցրած լինելով պետական ինքնուրույնությունը, հայ ժողովրդին մնում էր հոգևոր միասնությամբ՝ մշակույթի զարգացումով, լեզվի պահպանումով հակակայել ասիմիլյատորական քաղաքականությանը, որ վարում էին թե՛ պարսկական և թե՛ հունական հատվածներում։ Այդ բանը հիանալիորեն ապացուցվեց Մեսրոպի մահվանից ընդամենը մեկ տասնամյակ հետո, երբ քրիստոնեական կրոնը պաշտպանելու նշանաբանով ոտքի ելավ հայ ժողովուրդը կենաց և մահու պատերազմի (Վարդանանց պատերազմը), բայց իրականում դա ոչ թե կրոնական, այլ համաժողովրդական-ազատագրական պատերազմ էր՝ հայ ժողովրդի գոյությունը պահպանելու, նրան ձուլումից փրկելու նպատակով։ Այնպես որ այդ ժամանակ և այդ իրադրություններում կրոնականը միաձուլվում էր ազգայինի հետ և այս տեսակետից Մեսրոպի գործունեությունը հիրավի հայ ժողովրդին վերահաս ձուլումից փրկելուն ուղղված մեծագործություն էր։

Մեսրոպի հորինած հայկական այբուբենը բոլոր ուսումնասիրողների կողմից իրավամբ շատ բարձր է գնահատվում. այդ այբուբենը լիովին արտահայտում էր հայերենի հնչյունային համակարգը և կազմված էր հնչույթաբանական սկզբունքով։ Սակայն ավելի կարևոր էր Մեսրոպի սկզբնավորած գրական հուժկու շարժումը։ Սովորեցնելով այբուբենը, նա իր աշակերտներին պատրաստեց նաև իբրև թարգմանիչներ և ինքնուրույն գրքերի հեղինակներ. համեմատաբար կարճ ժամանակամիջոցում ինքը, Սահակը և նրանց աշակերտները ոչ միայն թարգմանեցին Աստվածաշունչը և եկեղեցական բազմաթիվ գրքեր, գիտական, փիլիսոփայական մեծարժեք երկեր, այլև ստեղծեցին ինքնուրույն փայլուն մատենագրություն (Կորյունի, Փավստոսի, Ագաթանգեղոսի, Եզնիկի գործերը)։ Այս բոլորը արգասավորեցին V դ. առաջին կեսի թարգմանական, գրական ու լուսավորական շարժումը և հաստատուն հող պատրաստեցին հետագայի այնպիսի գործերի համար, ինչպիսիք են մեր հին պատմագրության գլուխգործոցը՝ Մովսես Խորենացու

*«Հայոց պատմությունը», Դավիթ Անհաղթի փիլիսոփայական գործերը և այլն, և այլն։*

*Գրական այս շարժումն առաջ բերելը և այդ շարժումը գլխավորելը ամբողջ երեսունհինգ տարիների ընթացքում, Հայաստանի բոլոր գավառները շրջագայելը, ամենուրեք կրթական օջախներ հիմնելը, դրանց համար ուսյալ մարդիկ պատրաստելը, ինչպես և հարևան ժողովուրդների մասին հոգ տանելը,— այս բոլորը բնութագրում են Մեսրոպ Մաշտոցին ոչ միայն որպես լուսամիտ մարդու, գիտնականի, այլև իբրև մշակույթի բոլոր ժամանակների մեծագույն գործիչներից մեկի։ Ահա թե ինչու դարերի ընթացքում միշտ վառ է մնացել Մեսրոպի հիշատակը։ Երկու հակառակ ուժերի բռնակալական տիրապետության տակ, ինքնուրույն պետականությունից ու միասնությունից զրկված, ռազմական ուժով անհամեմատ թույլ հայ ժողովրդի ինքնությունը պահպանելու համար, բոլոր ժամանակների ասիմիլյատորների ձուլողական քաղաքականությանը դիմակայելու համար Մեսրոպը հայ ժողովրդին պարգևեց գրի ու գրականության համար ջահը։*

---

Կորյուն, *Վարք Մաշտոցի. բնագիրը, ձեռագրական այլընթերցվածներով, թարգմանությամբ, առաջաբանով և ծանոթագրություններով ի ձեռն պրոֆ. դ-ր Մ. Աբեղյանի, Երևան, 1941։*

Ակինյան Ն., *Մ. Մաշտոց վարդապետ, կյանքն ու գործունեությունը, Վիեննա, 1949։*

*«Մեսրոպ Մաշտոց. հոդվածների ժողովածու», ՀՍՍՀ ԳԱ հրատ., Երևան, 1962։*

*«Մեսրոպ Մաշտոց. հոդվածների ժողովածու», Երևանի համալսարանի հրատ., Երևան, 1963։*

Լեո, *Մեսրոպ Մաշտոց, Երևան, 1963։*

Աճառյան Հ., *Հայոց գրերը, հտ. I, Երևան, 1968։*

**Манандян Я.**, Месроп Маштоц и борьба армянского народа за культурную самобытность, Ереван, 1941.

**ԷԴ. ԱՂԱՅԱՆ**
**(ՀՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ)**

# ԿՈՐՅՈՒՆ

*Կորյունը հեղինակն է հայերեն առաջին գրքի, որը նվիրված է Մեսրոպ Մաշտոցի կենսագրությանն ու գրերի գյուտի պատմությանը։ Գրքի արժանիքը առավել ևս մեծ է նրանով, որ հեղինակը ժամանակակիցն ու մասնակիցն է մշակութային այդ կարևոր իրադարձության։*

*Կորյունի մասին կենսագրական որոշ տեղեկություններ պահպանվել են իր երկում։ Հայտնի չեն ոչ նրա ծննդյան տարին և ոչ էլ վայրը, միայն գիտենք, որ եղել է Մաշտոցի ավագ աշակերտներից Վաղարշապատի վարդապետարանում՝ հայկական առաջին դպրոցում։*

*Ուսման շրջանն ավարտելուց հետո իր ընկերների հետ ուղարկվել է Հայաստանի գավառները ուսուցչության և քարոզչության, ապա, 424 թ., հավանաբար Մաշտոցի առաջարկով, ընկերներից Ղևոնդի հետ մեկնել է Կոստանդնուպոլիս՝ հունական մատենագրությանն ու հունարենին հմտանալու, թարգմանություններ կատարելու նպատակով։ Այստեղ նրանք միացել են Մեսրոպ Մաշտոցի ավագ աշակերտներից Հովսեփ Պաղնացուն և Եզնիկ Կողբացուն, որոնք նույն նպատակով ուղարկվել էին այնտեղ. «...պատահեց, որ մեր Հայաստան աշխարհից դիմեցին, իջան հունական կողմերը մի քանի եղբայրներ, որոնց առաջինի անունը Ղևոնդես էր, և երկրորդը ես Կորյունս էի, և Կոստանդինական քաղաքում մոտեցան, հարեցին Եզնիկին, իբրև ընտանեգույն սննդակցի, և այնտեղ միասին կատարեցին հոգևոր պիտույքի խնդիրը [այսինքն թարգմանության գործը]»[1]։*

---

[1] Կորյուն, *Վարք Մաշտոցի, բնագիրը, ձեռագրական այլընթերցվածներով, թարգմանությամբ, առաջաբանով և ծանոթագրություններով ի ձեռն պրոֆ. դ-ր Մ. Աբեղյանի, Երևան, 1941, էջ 75։*

Ավարտելով իրենց կրթությունը, նրանք վերադառնում են Հայրենիք։ Այստեղ Կորյունը շարունակում է զբաղվել կրթական, քարոզչական գործով։

Մեսրոպ Մաշտոցի մահից հետո Կորյունը մտադրում է գրել իր ուսուցչի կենսագրությունը. «Մինչդեռ ես իմ մտքի մեջ մենակ հոգում էի իրողությունները հիշելու,— գրում է Կորյունը,— ահա եկավ, հասավ ինձ Հովսեփ կոչված մի պատվական մարդու, նրա [Մաշտոցի] աշակերտի հրամանն այդ անելու համար, դրա հետ նաև ուրիշների, մեր ուսման աշակերտակիցների քաջալերությունը։ Ուստի և ես, որ բախտ էի ունեցել նրա մասնավոր աշակերտը լինելու, թեպետ և կրտսերագույնն էի նրա աշակերտների մեջ, և այդ մեր ուժից վեր էր, բայց և այնպես բռնադատվելով ինձ հասած անաչառ հրամանից, սկսեցի շտապելով և անհապաղ գրի անցնել առաջադրանքը» (էջ 23)։

Եվ Կորյունը գրում է իր գիրքը՝ «Պատմութիւն վարուց և մահուան առն երանելւոյ սրբոյն Մաշթոցի վարդապետի մերոյ թարգմանչի», որը համառոտ կոչվում է «Վարք Մաշտոցի»։ Ամենայն հավանականությամբ այն գրվել է 443—450 թթ. միջև։

«Վարք Մաշտոցի» երկը մեզ է հասել երկու տարբեր խմբագրությամբ՝ ընդարձակ և համառոտ։ Ոմանք համառոտն են համարել հարազատ, նախնականը, ուրիշները՝ ընդարձակը։ Այժմ վերջնականապես ապացուցված է, որ Կորյունի գրչին պատկանում է ընդարձակը, իսկ համառոտը հետագա՝ VI—IX դարերում փոփոխությունների ենթարկված մի տարբերակ է, կատարված հիմնականում Մովսես Խորենացու «Հայոց պատմության» ազդեցությամբ։

Ներածական հատվածից հետո Կորյունը գրել է ընդարձակ մի առաջաբան, որտեղ բազմաթիվ օրինակներով, մեջբերումներով ցանկանում է հիմնավորել, թե որքանով է թույլատրելի «կատարյալ մարդկանց վարքի մասին գրել»։

Առաջին հայացքից թվում է, թե այդ առաջաբանը չի առնչվում բուն նյութի հետ. հավանաբար, այդ է պատճառը, որ համառոտ տարբերակում հանված է։ Սակայն Կորյունն այդ հատվածը գրել է ոչ պատահական. նա ունեցել է իր նպատակադրումը։

Ինչպես հայտնի է, վարքեր գրվում էին միայն սրբերի մասին։ Ընդհանուր քրիստոնեական գրականությունից հայտնի են Բարսեղ Կեսարացու, Հովհան Ոսկեբերանի, Գրիգոր Նազիազանցու, Սեղբեստրոսի և այլոց վարքերը։ Բայց չէ՞ որ Մեսրոպը սուրբ չէր։ Կորյունը Մաշտոցին հավասար է դասում նրանց, քանի որ նա հայ ժո-



ղովրդի համար կատարել էր այնպիսի մի բացառիկ գործ, ինչպիսին գրերի գյուտն էր։

Հայաստանում, մինչև հայերեն այբուբենի ստեղծումը, եկեղեցիներում արարողությունը լինելով ասորերեն և հունարեն, մեծ դիրքի էր հասել օտար, մանավանդ, ասորի հոգևորականությունը, որ վայելում էր պարսից արքունիքի հովանավորությունը։ Գրերի ստեղծումը և հայերեն լեզվով քարոզելը մեծ չափով հեղինակազրկել էր նրանց, բայց և իրենց նախկին իրավունքների համար պայքարի հանել։ Եվ քանի որ նրանց ազդեցությունը մեծ էր, Կորյունն էլ ըստ երևույթին ցանկացել է կանխել անխուսափելի հարձակումները և գրել է այդ առաջաբանը։

Վերոհիշյալ հատվածից հետո սկսվում է գրքի բուն մասը՝ Մեսրոպ Մաշտոցի վարքը, ուր տրվում է Մաշտոցի կենսագրությունը՝ ծննդյան վայրը, ում որդի լինելը, կրթություն ստանալը և այլն, Մաշտոցի գործունեությունը արքունիքում, քարոզչությամբ զբաղվելը Գողթն գավառում, ապա՝ գրերի գյուտը։

Կորյունը գրերի գյուտը նկարագրել է մանրամասնորեն, լիովին գիտակցելով նրա մշակութային ու քաղաքական մեծ նշանակությունը։

Գրերի ստեղծմամբ մտահոգված էր ոչ միայն հոգևոր, այլև աշխարհիկ իշխանությունը։

Երբ Մեսրոպը և Սահակը Վռամշապուհ թագավորին հայտնում են իրենց մտադրության մասին, թագավորը տեղեկացնում է, թե իրեն հաղորդել են, որ Դանիել անունով մի ասորի հոգևորականի մոտ կան հայերեն գրեր։ Վռամշապուհը Վահրիճ անունով մեկին ուղարկում է Հաբել երեցի մոտ, որը Դանիել եպիսկոպոսի մերձավորներից էր, և բերել է տալիս այդ գրերը։ Սակայն, ինչպես պարզվում է կարճ ժամանակ այդ գրերով ուսուցանելուց հետո, դրանք չէին բավարարում հայերենի հնչյունական համակարգին։ Եվ Մեսրոպ Մաշտոցը հանձն է առնում ստեղծել հայերեն տառերը։

Այդ նպատակով նա իր աշակերտների հետ մեկնում է Եդեսիա և Սամոսատ, որտեղ ձեռնամուխ է լինում այդ տքնաջան գործին։ Եդեսիայում էլ, ինչպես գրում է Կորյունը, Մաշտոցը «իր սուրբ աջով հայրաբար ծնեց նոր և սքանչելի ծնունդներ— հայերեն լեզվի նշանագրեր» (49)։ Սամոսատում էլ Հռոփանոս անունով մի հույն գրագրի հետ միասին «նշանագրերի բոլոր զանազանությունները՝ բարակն ու հաստը, կարճն ու երկայնը, առանձինն ու կրկնավորը ամբողջապես հորինելուց և վերջացնելուց հետո՝ ձեռնարկեց թարգ-

մանություն անելու երկու մարդու, իր աշակերտների հետ, որոնց առաջինի անունը Հովհան էր, Եկեղյաց գավառից և երկրորդինը՝ Հովսեփ, Պաղնական տնից» (49—51)։

Կորյունը հատկապես նկարագրում է Մաշտոցին ցույց տրված այն հանդիսավոր ու ջերմ ընդունելությունը, երբ նա վերադառնում է Սամոսատից՝ բերելով հայերեն նշանագրերը. «Երբ եկավ, մոտեցավ թագավորական քաղաքին, իմաց տվեցին թագավորին և սուրբ եպիսկոպոսին։ Նրանք նախարարագունդ ավագանու բոլոր բազմությունն առնելով՝ քաղաքից դուրս եկան, Ռահ գետի ափին դիմավորեցին երանելիին։ Եվ ցանկալի ողջույնը միմյանց տալուց հետո՝ այնտեղից ցնծության ձայներով և հոգևոր երգերով ու բարձրաձայն օրհնություններով ետ դարձան քաղաքը, և տոնական ուրախությամբ անց կացրին օրերը» (55)։

Այնուհետև Կորյունը պատմում է Մաշտոցի՝ ինչպես Վաղարշապատում, այնպես էլ Հայաստանի գավառներում ծավալած ուսուցչական գործունեության և թարգմանչական աշխատանքի մասին։

Գրերի գյուտից հետո Մաշտոցը նախ ուղևորվում է դեպի Արարատ լեռան հյուսիս-արևելյան շրջանները, ուր բնակիչների համար գրերի ուսուցումը դժվար մատչելի էր «ոչ միայն իրենց դիվական, սատանայակիր, ճիվաղական բարքի, այլև խեցբեկագույն և կոշտ ու կոպիտ լեզվի պատճառով» (55)։ Հեթանոսության «հայրենական սովորությունները» էին իշխում Գողթնում, Սյունիքում և այլ վայրերում։

Ինչպես երևում է Կորյունի այս վկայությունից, հայ նոր դպրությունը կոչված է եղել ոչ միայն ծառայելու քրիստոնեության ամրապնդմանը, այլև դեռևս հեթանոսական հավատք ունեցող գավառներում նոր կրոնի տարածմանը։

Կորյունը համեմատաբար ընդարձակ է խոսում Մաշտոցի մեծ գործի անմիջական մասնակից Սահակ Պարթև կաթողիկոսի մասին, որը V դարի հայ քաղաքական, հոգևոր և մշակութային կյանքի ականավոր ներկայացուցիչներից է։

Միայն այն փաստը, որ նրա անմիջական աջակցությամբ ու խրախուսանքով է Մաշտոցը ստեղծել հայոց այբուբենը, հնարավորություն է տալիս Սահակին համարելու հայ մշակույթի ռահվիրա։ Նա ունեցել է նաև գրական գործունեություն։ Նրան են վերագրվում եկեղեցական կանոններ, երկու թղթեր և մի քանի շարականներ։ Սահակ Պարթևի և Մեսրոպ Մաշտոցի հետ միասին հայ



առաջին թարգմանիչներն են Հովսեփ Վայոցձորեցի կաթողիկոսը, Ղևոնդ Երեցը, Հովհան Եկեղեցացին, Եզնիկ Կողբացին, Կորյունը և ուրիշներ։ Սակայն, ըստ երևույթին, թարգմանություններով զբաղվել է հիմնականում Սահակ Պարթևը. «Իսկ երանելի Սահակը,— գրում է Կորյունը,— առաջ հունարեն լեզվից հայերեն էր դարձրել եկեղեցական գրքերի ամբողջությունը և շատ սուրբ հայրապետների իմաստություն։ Դրանից հետո դարձյալ նա Եզնակի հետ միասին սկսեց և առաջվա հանկարծագյուտ շտապովի թարգմանությունները հաստատեց բերված ստույգ օրինակներով» (77)։

Այս նշանավոր դեմքի մասին խոսում են նաև Մովսես Խորենացին, Ղազար Փարպեցին, մի անանուն պատմիչ «Պատմութիւն վասն սրբոյն Սահակայ հայրապետին և Մեսրովբայ վարդապետին» երկում և սակավաթիվ այլ հեղինակներ, սակայն մեծ արժեք են ներկայացնում հատկապես այն տվյալները, որ հաղորդում է նրա ու Մաշտոցի աշակերտ Կորյունը։

Թեև Կորյունի նպատակն է եղել տալ միայն Մաշտոցի կյանքն ու գործունեությունը, սակայն նրա երկում կան կարևոր տեղեկություններ Հայաստանի ներքին քաղաքական ու հասարակական կյանքի մասին։

«Վարքը» վերջանում է ժամանակագրական մի հատվածով։ Սա առաջին ժամանակագրությունն է հայ մատենագրության մեջ։ Այն հաղորդում է տվյալներ Մեսրոպ Մաշտոցի կենսագրության, գրերի գյուտի տարեթվի վերաբերյալ։

Ի՞նչ է իրենից ներկայացնում Կորյունի երկը։ Սովորական վա՞րք է, ձո՞ն ուղղված հանճարեղ Մաշտոցին, թե՞ ուղղակի պատմություն։

Թեև նրա երկը կոչվում է «Վարք» և իր մեջ պարունակում է վարքագրական երկերին հատուկ շատ բան, բայց առավել բնորոշը այդ գրքի համար պատմականությունն է. այն պատմությունն է Մաշտոցի և հայ գրերի գյուտի։

Ըստ էության Կորյունի երկը միակ և հավաստի աղբյուրն է հայ գրերի գյուտի և դպրության սկզբնավորության վերաբերյալ. հետագա հեղինակները այդ իրադարձությունների մասին իրենց տեղեկությունները քաղում են հիմնականում նրանից, երբեմն միայն մասնակի լրացումներ կատարելով։

Ինչպես արդեն ասվեց, Կորյունը եղել է Մաշտոցի աշակերտներից և իր գիրքը գրել է նրա մահվանից անմիջապես հետո, բո-

լոր աշակերտների կենդանության օրոք, և նրա հաղորդած տեղեկությունները միանգամայն հավաստի են։

Կորյունի լեզվի մասին մեծանուն հայագետ Մանուկ Աբեղյանը գրում է, որ այն «միակերպ չէ. մերթ կարճ ու հակիրճ է, մերթ երկարաբան ու խրթին։ Նա հորինում է շատ ճոռոմ պատկերավորությամբ, ավելորդ զարդերով ու պաճուճանքներով խճողված, ինչպես ինքն ասում է, «ծաղկեցրած»։ Նրա գրածը հաճախ մութն է նաև անկանոն լեզվի կամ բարդ պարբերությունների պատճառով։ Երբեմն պակասում են անհրաժեշտ բառեր, կամ շատ կան ամբողջ նախադասություններ փոխարինող յուրահատուկ նորահնար բարդ բառեր, այլև բառերի կիրառություն ոչ մեզ ծանոթ սովորական նշանակությամբ»[2]։

Այնուամենայնիվ Կորյունի երկը շատ արժեքավոր է լեզվաբանական տեսակետից, քանի որ այն հայոց լեզվի գրավոր շրջանի առաջին գործն է։ Հայոց լեզվի պատմության ուսումնասիրության համար այն կարևոր է թե՛ իր բառապաշարով, թե՛ լեզվամտածողությամբ և թե, վերջապես, իբրև դասական գրաբարի ամենահին արտահայտություն։

Կորյունը ուրիշ աշխատություններ գրել է, թե ոչ, հայտնի չէ։ Սակայն այդ միակ երկն էլ բավական է նրան հայ մատենագրության նշանավոր դեմքերից մեկը համարելու համար։ Եվ իզուր չէ, որ նրան բնութագրել են «Կորյուն սքանչելի», «Կորյուն երանելի», «Կորյուն հանճարաբան» և այլ մեծարական խոսքերով։

Դեռևս XVII դ. հայ հրատարակչական գործի մեծ երախտավոր Ոսկան Երևանցին Մաշտոցի վարքը թարգմանել է լատիներեն։ Կորյունի երկը ունեցել է բազմաթիվ հրատարակություններ, թարգմանվել ռուսերեն և եվրոպական լեզուներով։

Կորյուն, Վարք Մաշտոցի. ուղղյալ և լուսաբանյալ ի Գառնիկ Ֆնտգլյանէ, Երուսաղեմ, 1930։

Կորյուն, Վարք Մաշտոցի, բնագիրը ձեռագրական այլընթերցվածներով, թարգմանությամբ, առաջաբանով և ծանոթագրություններով ի ձեռն պրոֆ. դ-ր Մ. Աբեղյանի, Երևան, 1941, 1962։

Կորյուն, Վարք Մաշտոցի, քննական բնագիրը, առաջաբանը և ծանոթագրությունները Ն. Ակինյանի, «Հանդես ամսօրյա», 1949, էջ 171—320։

[2] Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, Երկեր, հտ. Գ, Երևան, 1968, էջ 178։



Корюн, Житие Маштоца, перевод Ш. В. Смбатяна и К. А. Мелик-Оганджаняна, предисловие К. А. Мелик-Оганджаняна, комментарий Ш. В. Смбатяна, Ереван, 1962.

«Coriun's Lebensbeschreibung des hl. Mesrop». Aus dem armenischen Urtexte zum ersten Male übersetzt und auz armenischen Schriftstellern erläutert von Dr. B. Welte. Tubingen, 1841.

Coriun, Biographie du bienheureux et saint docteur Mesrop, trad. pour la première fois en français par Jean-Raphael Emine. V. Langlois. Collection des historiens anciens et modèrnes de l'Arménie, t. II, Paris, 1869.

Coriun, The Life of Maschtots, Translated by Bedros Norechad, New-York, 1964.

Հարությունյանց Ի., Հայոց գիրը, Թիֆլիս, 1892։

Ներսէյ Բյուզանդացի, Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւնք, Տփղիս, 1900։

Աբեղյան Մ., Հայոց հին գրականության պատմություն, հտ. I, Երևան, 1944, նույնը՝ Երկեր, հտ. Գ, Երևան, 1968։

Աճառյան Հր., Հայոց գրերը, հտ. I, Երևան, 1968։

Müller F., Lazar Pharpetshi und Koriun, «Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes», 5(1891), հայերեն թարգմանությունը՝ «Հանդես ամսօրյա», 1891։

Bardenhewer O., Geschichte des altkirchlichen Literatur, V. Freibur Br. 1932.

Ա. ՏԵՐ-ՍՏԵՓԱՆՅԱՆ